Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ,
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՅԵՎ ՄԱՄՈՒԼԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (41)

ՀԽՍՀ ԿԳԿ հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1938

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՑԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 10 (41)

ՀԽՍՀ ԿԳԿ Հրատարակչություն—
«ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ՑԵՐԵՎԱՆ— 1938

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Պատ. խմբ. տեղակալ՝
Հր. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Սրբագրիչներ՝ Ա. ՑՈՐԻՅԱՆ և
ԱՆԴ. ԲԱԼԱԲԱՆՅԱՆ
Գլավլիտի լիազոր՝ ՑՆ. 6614
Ստորագրված է տպագրության 13 մայիսի
1938 թ.
Պատվեր № 331: Տիրաժ 9612.
«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ
ԵՐԵՎԱՆ


## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

Ս. ՁՈՒԿՈՒՆՈՎ

# ԽՍՀՄ ՅԵՎ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՕՐԳԱՆՆԵՐԸ

### *ԻՆՉՊԻՍԻ՞ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐ ԵՆ ՊԱՏԿԱՆՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻՆ*

*ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը հանդիսանում է պետական իշխանության բարձրագույն օրգանը Խորհրդային Միության մեջ: Միայն ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդն իրավունք ունի օրենքներ հրատարակելու: Նրան են պատկանում այն բոլոր իրավունքները, վորոնցով օժտվում է ԽՍՀՄ-ը Սահմանադրության 14-րդ հոդվածի համա-*

ձայն: Այդ իրավունքների մի մասն անմիջականորեն իրականացվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդին հաշվետու օրգանների կողմից — ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության, ԽՍՀՄ Ժողկոմխորհի և ԽՍՀՄ առանձին ժողովրդական կոմիսարիատների կողմից: ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը յերկու պալատների համատեղ նիստում ընտրում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահություն, կազմված Նախագահության նախագահից, նրա 11 տեղակալներից (ըստ միութենական հանրապետությունների թվի), Նախագահության քարտուղարից և Նախագահության 24 անդամներից: ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը, նույնպես յերկու պալատների համատեղ նիստում, կազմում է ԽՍՀՄ կառավարություն — ԽՍՀՄ Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդ: Կառավարությունը պատասխանատու յե ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջ և հաշվետու յե նրան: Նա նաև ընտրում է ԽՍՀՄ Գերագույն Դատարանը և ԽՍՀՄ հատուկ դատարանները:



## Ի՞ՆՉ ՊԱԼԱՏՆԵՐԻՑ Է ԿԱԶՄՎԱԾ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՅԵՎ ԻՆՉՊԻՍԻ՞ ԴԵՐ ՈՒՆԵՆ ԱՅԴ ՊԱԼԱՏՆԵՐԸ

ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը կազմված է յերկու պալատից — Միության Խորհրդից և Ազգությունների Խորհրդից: Յերկու պալատներն էլ իրավահավասար են: Նրանցից յուրաքանչյուրն ունի օրենսդրական նախաձեռնության իրավունք, այսինքն՝ իրավունք՝ օրենքների նախագծեր ներկայացնելու Գերագույն Խորհրդի քննարկմանը: Օրենքը համարվում է հաստատված, յեթե այն ընդունվել է յերկու պալատների կողմից ձայների պարզ մեծամասնությամբ: Պալատներից յուրաքանչյուրն ընտրում է մշտական նախագահ և նրա յերկու տեղակալներ, վորոնք ղեկավարում են պալատների նիստերը և տնօրինում են նրանց ներքին կարգը: Համատեղ նիստերում հերթով նախագահում են յերկու պալատների նախագահներն էլ: Պալատների նստաշրջաններն սկսվում և ավարտվում են միաժամանակ:

## ԻՆՉՊԻՍԻ՞ ԺԱՄԿԵՏՈՎ ԵՆ ԸՆՏՐՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ ՅԵՎ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՈՒ ԱՎՏՈՆՈՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԸ

*ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը և բոլոր միութենական ու ավտոնոմ հանրապետությունների Գերագույն Խորհուրդներն ընտրվում են 4 տարի ժամանակով:*

## ԻՆՉՊԻՍԻ՞ ՊԱՐԲԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՄԲ ԵՆ ՀՐԱՎԻՐՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆՍՏԱՇՐՋԱՆՆԵՐԸ

*ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նստաշրջանները հրավիրվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, տարին յերկու անգամ: Արտակարգ նստաշրջանները հրավիրվում են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից՝ նրա հայեցողությամբ, կամ թե միութենական հանրապետություններից վորևե մեկի պահանջով:*

## ՎՈՐՈ՞ՆՔ ԵՆ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԸ

*Ընկեր* Ստալինն *այդ որգանն անվանեց Խորհրդային Միության կոլեկտիվ պրեզի-*



*դենտ: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունը հրավիրում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նստաշրջաններ, տալիս է գործող որենքների մեկնաբանումը, հրատարակում է հրամանագրեր, արձակում է Գերագույն Խորհուրդն այն դեպքում, յերբ նրա պալատները համաձայնության չեն գալիս վիճելի հարցերի վերաբերյալ, կատարում է համաժողովրդական հարցում (ռեֆերենդում) իր նախաձեռնությամբ կամ միութենական հանրապետություններից մեկի պահանջով․ չեղյալ է հայտարարում Միության Ժողկոմխորհի և միութենական հանրապետությունների ժողկոմխորհների վորոշումներն ու կարգադրությունները, յեթե այդ վորոշումներն ու կարգադրությունները չեն համապատասխանում որենքին․ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում պաշտոնից ազատում և նշանակում է ԽՍՀՄ առանձին ժողկոմներին՝ ԽՍՀՄ Ժողկոմխորհի նախագահի առաջադրմամբ, հետագայում ներկայացնելով ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի հաստատությանը․ պարգևատրում է շքանշաններով և շնորհում է ԽՍՀՄ պատվավոր կոչումներ․ իրականացնում է ներման իրավունքը․ նշանակում և*

փոխում է ԽՍՀՄ զինված ուժերի բարձրագույն հրամանատարությունը․ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նստաշրջանների միջև ընկած ժամանակաշրջանում պատերազմի վիճակ է հայտարարում՝ ԽՍՀՄ վրա ռազմական հարձակում կատարվելու դեպքում կամ ագրեսիայից փոխադարձաբար պաշտպանվելու միջազգային պայմանագրային պարտավորությունների կատարման անհրաժեշտության դեպքում․ հայտարարում է ընդհանուր և մասնակի զորահավաք․ վավերացնում է միջազգային պայմանագրերը․ նշանակում է ԽՍՀՄ լիազոր - ներկայացուցիչներ օտարերկրյա պետություններում և հետ է կանչում նրանց․ ընդունում է իրեն մոտ ակրեդիտացիայի ենթարկված (հավատարմագրով ներկայացված) օտարերկրյա պետությունների դիվանագիտական ներկայացուցիչների հավատարմագրերն ու հետկանչման թղթերը․ առանձին վայրերում կամ ամբողջ ԽՍՀՄ-ում հայտարարում է պատերազմական դրություն, ելնելով ԽՍՀՄ-ի պաշտպանության կամ հասարակական կարգի ու պետական անվտանգության ապահովելու շահերից:



## ԻՆՉՊԻՍԻ՞ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ ԵՆ ԸՆՏՐՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱԼԱՏՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ

Պալատներից յուրաքանչյուրն ընտրում է Մանդատային հանձնաժողով, որը ստուգում է տվյալ պալատի պատգամավորների լիազորությունները: Մանդատային հանձնաժողովի առաջարկությամբ պալատը որոշում է կամ ճանաչել լիազորությունները, կամ թե բեկանել առանձին պատգամավորների ընտրությունները: Միության Խորհուրդն իր առաջին նստաշրջանում ընտրեց Մանդատային հանձնաժողով, կազմված 11 հոգուց, նախագահությամբ ՌՍՖՍՀ Իրկուտսկի ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Ա. Ս. Շչերբակովի: Ազգությունների խորհուրդն իր առաջին նստաշրջանում ընտրեց Մանդատային հանձնաժողով, նույնպես կազմված 11 հոգուց, նախագահությամբ Ղազախական ԽՍՀ Պետրոպավլովսկի քաղաքային օկրուգի պատգամավոր Սադիկ Նուրպեյիսովի:

Գերագույն Խորհուրդը՝ երբ անհրաժեշտ համարի՝ նաև նշանակում է քննիչ ու վերստուգիչ հանձնաժողովներ ամեն մի հարցի վերաբերյալ․ բոլոր հիմնարկներն ու պաշտոնատար անձինք պարտավոր են կատարել

այդ հանձնաժողովների պահանջները և նրանց ներկայացնել անհրաժեշտ նյութերն ու փաստաթղթերը։

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին նստաշրջանում պալատներից յուրաքանչյուրն ընտրեց յերեքական մշտական հանձնաժողով — որենսդրական յենթադրությունների հանձնաժողովներ, բյուջետային հանձնաժողովներ և արտաքին գործերի հանձնաժողովներ։ Այդ հանձնաժողովները նախապատրաստում են պալատներից յուրաքանչյուրի քննարկմանը ներկայացվելիք հարցերը։

## ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԿԱԶՄՎԱԾ ՅԵՎ ԻՆՉՈ՞Վ ԵՆ ԶԲԱՂՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱԼԱՏՆԵՐԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ՈՐԵՆՍԴՐԱԿԱՆ ՅԵՆԹԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ

Ինչպես մատնանշեց Միության Խորհրդում ունեցած իր յելույթի մեջ պատգամավոր Ն. Ս. Խրուշչովը, այդ «հանձնաժողովը պետք է նախապես մշակի այս կամ այն որենքը, այն ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից քննարկվելու և ընդունվելու համար»։

Միության Խորհրդի որենսդրական յեն-



թադրությունների հանձնաժողովը սահմանված է 10 հոգու կազմով. Նրա նախագահն է ընտրված ընկ. Դ. Յե. Յեվտուշենկոն— պատգամավոր Ուկրաինական ԽՍՀ Կիյևի մարզի Բելոցերկովսկի ոկրուգից։

Ազգությունների Խորհրդի որենսդրական յենթադրությունների հանձնաժողովը սահմանված է նույնպես 10 հոգու կազմով։ Նրա նախագահն է ընտրված ընկ. Պ. Ա. Տյուրկինը— պատգամավոր ՌՍՖՍՀ Լենինգրադի գյուղական ոկրուգից։

## ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԿԱԶՄՎԱԾ ՅԵՎ ԻՆՉՈ՞Վ ԵՆ ԶԲԱՂՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱԼԱՏՆԵՐԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ԲՅՈՒՋԵՏԱՅԻՆ ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ

Պատգամավոր Ա. Ի. Սոեցկին, վորն առաջարկեց կազմակերպել այդ հանձնաժողովը, Ազգությունների Խորհրդում ունեցած իր յելույթի մեջ մատնանշեց, վոր նա պետք է նախապես քննության առնի ԽՍՀՄ միասնական պետական բյուջեյի նախագիծը, վորը ԽՍՀՄ Ժողկոմխորհի կողմից ներկայացվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի նստաշրջանի հաստատմանը, տա իր յեզրակացությունն այդ նախագծի վերաբերմամբ և այդ յեզրակացության մասին

զեկուցի Ազգությունների Խորհրդին: Այդ հանձնաժողովը պետք է նաև յեզրակացություն տա պետական բյուջեյի կատարման մասին հաշվետվության վերաբերյալ, վոր ԽՍՀՄ Գերագույն Խորհրդին է ներկայացվում կառավարության կողմից:

Ընկ. Սանցկին նշեց, վոր բյուջեյի մեջ արտացոլումն է գտնում յերկրի ամբողջ տնտեսական կյանքը: Բյուջեն դրամի հաշվով վորոշում և ամրապնդում է տնտեսական պլանն ու նրա կատարումը: Բյուջեյով են դրամի չափով բաշխվում մեր խորհրդային պետության ժողովրդական յեկամուտները՝ հօգուտ աշխատավորների շահերի, հօգուտ սոցիալիստական ինդուստրիայի զարգացման, կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների ամրապնդման ու զարգացման շահերի. բյուջեն ճիշտ նույնպես վորոշում է նաև կուլտուրական շինարարության վրա կատարվող ծախսերը, մեր միութենական պետության ծախսերը՝ յերկրի պաշտպանության կարիքների վրա, մեր պանծալի Կարմիր Բանակի ամրապնդման վրա:

Միության Խորհրդի բյուջետային հանձնաժողովը ստեղծված է 13 հոգու կազմով: Նրա նախագահն է ընտրված Մոսկվա քա-



ղաքի Հոկտեմբերյան շրջանի պատգամավոր ընկ. Ի. Ի. Միզարովը:

Ազգությունների Խորհրդի բյուջետային հանձնաժողովը ստեղծված է նույնպես 13 հոգու կազմով: Նրա նախագահն է ընտրված Մոսկվայի գյուղական շրջանի պատգամավոր ընկ Ի. Ս. Խոխլովը:

## ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԿԱԶՄՎԱԾ ՅԵՎ ԻՆՉՈ՞Վ ԵՆ ԶԲԱՂՎՈՒՄ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱԼԱՏՆԵՐԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ

Պատգամավոր Լ. Պ. Բերիան վորը Միության Խորհրդում առաջարկ մտցրեց այդ հանձնաժողովները կազմակերպելու մասին, իր առաջարկը պատճառաբանեց արտաքին քաղաքականության հարցերի մեծ կարևորությամբ: Պատգամավոր Ռ. Յու. Շմիդտը, վոր նույնպիսի առաջարկ մտցրեց Ազգությունների Խորհրդում, մատնանշեց, վոր Գերագույն Խորհուրդը չի կարող ամենաաչալուրջ ուշադրություն չդարձնել միջազգային գործերին, վոր յերկրի ամբողջ 170 միլիոնանոց բնակչությունը միահամուռ կերպով պաշտպանում է իր կառավարությանը—նրա ներքին ու արտաքին քաղաք-

կանության մեջ: Արտաքին գործերի մշտական հանձնաժողովների ընտրությունները, —ինչպես գրում էր «Պրավդան» 1938 թվի հունվարի 14-ի առաջնորդողի մեջ,— «տեղի չեն ունենում այնպիսի ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում ամենուրեք ժողովուրդը լիովին հեռացված է պատերազմի ու խաղաղության հարցերի լուծումից, երբ նույնիսկ «դեմոկրատիկ» երկրներում բուրժուազիայի արտաքին քաղաքականությունը վեր է ածվել գաղտնի դավադրության՝ ընդդեմ ժողովուրդի»: «Պրավդան» ասում է, վոր «Գերագույն Խորհուրդն արտաքին քաղաքականությունը կվարի խաղաղության ու պաշտպանության այն ուղիով, վորը ամուր, երկաթե ձեռքով գծել է ընկեր Ստալինը: Գերագույն Խորհրդում հզոր ու սիրալիր հենարան կգտնեն և՛ մեր պանծալի Կարմիր Բանակը, և՛ մեր ներքգործժողկոմատականները — լրտեսական-դիվերսիոն, տրոցկիստական-բուխարինական աղտեղության դեմ պայքարող երկաթակուռ մարտիկները — աղտեղություն, վոր կապիտալիստական շրջապատումն ուղարկել է և կփորձի ուղարկել մեր երկիրը»:

Միության Խորհրդի արտաքին գործերի



հանձնաժողովը սահմանված է 11 հոգու կազմով. Նրա նախագահն է ընտրված ընկ. Ա. Ա. Ժդանովը— պատգամավոր Լենինգրադ քաղաքի Վոլոդարսկի օկրուգից:

Ազգությունների Խորհրդի արտաքին գործերի հանձնաժողովը սահմանված է 10 հոգու կազմով: Նրա նախագահն է ընտրված ընկ. Ն. Ա. Բուլգանինը,—պատգամավոր Մոսկվայի քաղաքային օկրուգից:

## ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՎՈ՞Ր ՈՐԳԱՆՆԵՐՆ ԵՆ ՊԱՀՊԱՆՎՈՒՄ ՆՈՐ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱՄԻՋՈՑՈՒՄ

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի լիազորությունները լրանալուց հետո կամ նրա արձակվելու դեպքում նոր ընտրությունները նշանակվում են Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից, վոչ ուշ քան լիազորությունները լրանալուց կամ Գերագույն Խորհուրդն արձակվելուց հետո երկու ամսվա ընթացքում. Նախագահության կողմից էլ հենց հրավիրվում է նաև նոր ընտրված Գերագույն Խորհուրդը, վոչ ուշ քան ընտրություններից մեկ ամիս հետո: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահությունն իր լիազորությունները պահպանում է մինչև ԽՍՀՄ նորընտիր Գերագույն Խորհրդի կող-

մից Գերագույն Խորհրդի նոր Նախագահության կազմվելը:

## Ո՞ՎՔԵՐ ԵՆ ԸՆՏՐՎԱԾ ՊԱԼԱՏՆԵՐԻՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻ ՅԵՎ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐ

Միության Խորհրդի նախագահ ընտրված է Թուրքմենական ԽՍՀ Աշխաբադի ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Ա. Ա. Անդրեյեվը. Նրա տեղակալներ—Ուկրաինական ԽՍՀ Նովո-Ուկրաինկի ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Տ. Դ. Լիսենկոն և Ուզբեկական ԽՍՀ Տաշքենդի գյուղական ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Սուլթան Սեգիզբայեվը:

Ազգությունների Խորհրդի նախագահ ընտրված է ՌԽՖՍՀ Սվերդլովսկի ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Ն. Մ. Շվերնիկը. Նրա տեղակալներ— Ադրբեջանական ԽՍՀ Բաքու քաղաքի Հոկտեմբերյան ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Զինաթ Ասլանովան և Բելոռուսական ԽՍՀ Վիտեբսկի քաղաքային ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Ա. Մ. Լևիցկին:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության նախագահ ընտրված է ՌԽՖՍՀ Լենինգրադի ընտրական օկրուգի պատգամա-



վոր ընկ. Մ. Ի. Կալինինը. Նախագահության քարտուղար— Չուվաշական ԱԽՍՀ Կանաշսկի ընտրական օկրուգի պատգամավոր ընկ. Ա. Ֆ. Գորկինը:

## Ի՞ՆՉՊԻՍԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆ ԿԱ ԽՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՅԵՎ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՉԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՄԵՋ

Բոլոր միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդները մեկ պալատանի յեն, այնքան վորքան առանձին ազգությունների յուրահատուկ շահերն արտացոլված են ԽՍՀՄ Գերագույն Խորհրդում՝ նրա Ազգությունների Խորհրդի միջոցով: Միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդներն ընտրվում են տվյալ հանրապետության քաղաքացիների կողմից, ըստ ընտրական օկրուգների: Յուրաքանչյուր օկրուգ ընտրում է մեկ պատգամավոր: Գերագույն Խորհուրդներում ունենալիք ներկայացուցչության նորմաները սահմանվում են միութենական հանրապետությունների Սահմանադրություններով: ՌԽՖՍՀ Գերագույն Խորհուրդն ընտրվում է ըստ ընտրական օկրուգների, 150 հազար բնակչից մեկ պատգամավորի նորմայով.

Ուկրաինական ԽՍՀ-ում — մեկ պատգամավոր 100 հազար բնակչից. Բելոռուսական ԽՍՀ-ում և Ղազախական ԽՍՀ-ում — մեկ պատգամավոր 20 հազար բնակչից: Ուզբեկական ԽՍՀ-ում և Վրացական ԽՍՀ-ում — մեկ պատգամավոր 15 հազար բնակչից. Ադրբեջանական ԽՍՀ-ում — մեկ պատգամավոր 10 հազար բնակչից. Հայկական ԽՍՀ-ում, Թուրքմենական ԽՍՀ-ում, Տաջիկական ԽՍՀ-ում և Կիրգիզական ԽՍՀ-ում — մեկ պատգամավոր 5000 բնակչից:

## ԻՆՉՊԻՍԻ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐ ԵՆ ՏՐԱՄԱԴՐՎԱԾ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻՆ

Միութենական հանրապետության Գերագույն Խորհուրդը հանդիսանում է տվյալ հանրապետության պետական իշխանության բարձրագույն օրգանը: Նա հանդիսանում է հանրապետության միակ օրենսդրական օրգանը: Նա ընդունում է հանրապետության Սահմանադրությունը և նրա մեջ՝ սահմանված կարգով՝ մտցնում է անհրաժեշտ փոփոխություններ. հաստատում է տվյալ միութենական հանրապետության կազմի մեջ գտնվող ավտոնոմ հանրապետությունների



Սահմանադրությունները և վորոշում է նրանց տերիտորիայի սահմանները. հաստատում է հանրապետության ժողովրդա-տնտեսական պլանը և բյուջեն. օգտվում է ամնիստիայի և այն քաղաքացիներին ներում շնորհելու իրավունքով, վորոնք դատապարտված են միութենական հանրապետության դատական օրգանների կողմից. ընտրում է միութենական հանրապետության Գերագույն Խորհրդի Նախագահություն՝ կազմված Նախագահության նախագահից, նրա տեղակալներից (յերկուական հոգի յուրաքանչյուր միութենական հանրապետության մեջ, բացի Ուզբեկական ԽՍՀ-ից, վորտեղ ընտրվում են յերեք տեղակալ, և ՌԽՖՍՀ-ից, վորտեղ ըստ ավտոնոմ հանրապետությունների թվի ընտրվում են 17 տեղակալներ), Նախագահության քարտուղարից և Նախագահության անդամներից (ՌԽՖՍՀ-ում ընտրվում են Նախագահության 20 անդամ. Ուկրաինական ԽՍՀ-ում Բելոռուսական ԽՍՀ-ում, Ղազախական ԽՍՀ-ում՝ 15-ական, Ադրբեջանական ԽՍՀ-ում, Վրացական ԽՍՀ-ում, Ուզբեկական ԽՍՀ-ում՝ 13-ական. Թուրքմենական ԽՍՀ-ում, Տաջիկական ԽՍՀ-ում և Կիրգիզական ԽՍՀ-ում՝ 11-ական, Հայկական

ԽՍՀ-ում՝ 9)։ Միութենական հանրապետության Գերագույն Խորհուրդը, իր նիստերը վարելու համար, ընտրում է նախագահ և նրա յերկու տեղակալներ․ կազմում է միութենական հանրապետության կառավարություն— միութենական հանրապետության Ժողովրդական կոմիսարների խորհուրդ, ընտրում է միութենական հանրապետության Գերագույն դատարան, իրականացնում է այն բոլոր մյուս իրավունքները, վոր պատկանում են տվյալ միութենական հանրապետությանը, նրա Սահմանադրության համաձայն (ըստ վորում այդ իրավունքների մի մասն անմիջականորեն իրականացվում է Գերագույն Խորհրդին հաշվետու օրգանների կողմից— Գերագույն Խորհրդի Նախագահության, Ժողկոմխորհի, տվյալ միութենական հանրապետության ժողկոմատների կողմից)․ ընտրում է Մանդատային հանձնաժողով, վորը ստուգում է Գերագույն Խորհրդի պատգամավորների լիազորությունները․ յերբ անհրաժեշտ է գտնում՝ նշանակում է քննիչ ու վերստուգիչ հանձնաժողովներ ամեն մի հարցի վերաբերյալ։



## ԻՆՉՊԻՍԻ՞Ն Է ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՈՒՐԴՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԳԸ

Միութենական հանրապետության Գերագույն Խորհուրդն աշխատում է նստաշրջանների կարգով։ Նստաշրջանները հրավիրվում են տարին յերկու անգամ, բայց Գերագույն Խորհրդի Նախագահության հայեցողությամբ կամ նրա պատգամավորների յերրորդ մասի պահանջով հրավիրվում են արտակարգ նստաշրջաններ։

## ՎՈՐՈ՞ՆՔ ԵՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԸ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Նա հրավիրում է Գերագույն Խորհրդի նստաշրջաններ․ տալիս է միութենական հանրապետության օրենքների մեկնաբանումը, հրատարակում է հրամանագրեր․ հանրապետության մեջ կատարում է համաժողովրդական հարցում (ռեֆերենդում)․ այն դեպքում, յերբ տվյալ միութենական հանրապետության Ժողկոմխորհի և նրա մեջ մտնող ավտոնոմ հանրապետությունների ժողկոմխորհների վորոշումները, վճիռներն ու կարգադրությունները, ինչպես նաև աշխատավորների պատգամավորների տեղա-

կան խորհուրդների (երկրամասային ու մարզային խորհուրդներինը՝ այն հանրապետություններում, որոնք ունեն երկրամասային կամ մարզային բաժանում, օկրուգային, շրջանային ու քաղաքային խորհուրդներինը — մյուս հանրապետություններում, ինչպես նաև ավտոնոմ մարզերի աշխատավորների պատգամավորների խորհուրդներինը) որոշումներն ու կարգադրությունները չեն համապատասխանում օրենքին, միութենական հանրապետության Գերագույն Խորհրդի Նախագահությունը չեղյալ է հայտարարում այդ որոշումները, վճիռներն ու կարգադրությունները: Նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում Նախագահությունն աշխատանքից ազատում և նշանակում է առանձին ժողկոմներին՝ Ժողկոմխորհի նախագահի առաջարկմամբ, հետագայում ներկայացնելով Գերագույն Խորհրդի հաստատությանը. շնորհում է միութենական հանրապետության պատվավոր կոչումներ. իրականացնում է այն քաղաքացիներին ներում շնորհելու անմիջական իրավունքը, որոնք դատապարտված են միութենական հանրապետության դատական օրգանների կողմից. Գերագույն Խորհրդի լիազորությունները լրանալուց հե-



տո նա նշանակում է նոր ընտրություններ՝ լիազորությունների վերջանալու օրվանից ոչ ուշ քան երկու ամսվա ընթացքում: Միութենական հանրապետության Գերագույն Խորհրդի Նախագահությունն իր լիազորությունները պահպանում է ընդհուպ մինչև այն ժամանակ, երբ նորընտիր Գերագույն Խորհուրդը կընտրի Գերագույն Խորհրդի նոր Նախագահություն: Ոչ ուշ քան նոր Գերագույն Խորհրդի ընտրություններից մեկ ամիս հետո, Նախագահությունը հրավիրում է նորընտիր Գերագույն Խորհրդի նստաշրջան՝ նոր Նախագահություն ընտրելու համար:

## ԻՆՉՊԵ՞Ս Է ԿԱԶՄՎՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ ԵՎ Ի՞ՆՉ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԻ ԱՅՆ

Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը (Ժողկոմխորհը) հանդիսանում է պետական իշխանության բարձրագույն գործադիր ու կարգադրիչ օրգանը, այսինքն՝ կառավարություն: ԽՍՀՄ Ժողկոմխորհը կազմվում է ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի կողմից, ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի երկու պալատների համատեղ նիստում: Միութենական ու ավտոնոմ հանրապետությունների ժողկոմխորհները կազմվում են նրանց Գերա-

գույն Խորհուրդների կողմից: Ժողկոմխորհը պատասխանատու յե Գերագույն Խորհըրդի առաջ և հաշվետու յե նրան, իսկ Գերագույն Խորհրդի նստաշրջանների միջև ընկած ժամանակամիջոցում պատասխանատու յե Գերագույն Խորհրդի Նախագահության առաջ, որին նույնպես հաշվետու յե:

## Ի՞ՆՉ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐ ՈՒՆԻ ԺՈՂԿՈՄԽՈՐՀԸ

Ժողկոմխորհը հրատարակում ե որոշումներ և կարգադրություններ՝ գործող օրենքների հիման վրա և ի կատարումն այդ օրենքների՝ ստուգում ե նրանց կատարումը: ԽՍՀՄ Ժողկոմխորհի բոլոր որոշումներն ու կարգադրությունները կատարման համար պարտադիր են ԽՍՀՄ ամբողջ տերիտորիայում. միութենական հանրապետությունների ժողկոմխորհների որոշումներն ու կարգադրությունները պարտադիր են տվյալ հանրապետության տերիտորիայում: Ժողկոմխորհը միավորում և ուղղություն ե տալիս առանձին ժողկոմատների և իր գերատեսչության տակ գտնվող տնտեսական ու կուլտուրական հիմնարկների աշխատանքին. միջոցներ ե ձեռք առնում ժողովրդա – տնտեսական պլանի, պետական



բյուջեյի իրականացման և վարկային-դրամական սիստեմի ամրապնդման ուղղությամբ. միջոցներ ե ձեռք առնում հասարակական կարգն ապահովելու, պետության շահերը պաշտպանելու և քաղաքացիների իրավունքների պահպանման ուղղությամբ: Անհրաժեշտության դեպքում Ժողկոմխորհին կից կազմում ե տնտեսական ու կուլտուրական շինարարության գործերի հատուկ կոմիտեներ և գլխավոր վարչություններ:

## Ի՞ՆՉՊԻՍԻ ՀԱՏՈՒԿ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐ ՈՒՆԻ ԽՍՀՄ ԺՈՂԿՈՄԽՈՐՀԸ

ԽՍՀՄ Ժողկոմխորհը նաև ընդհանուր ղեկավարություն ե իրականացնում օտարերկրյա պետությունների հետ ունեցած հարաբերությունների բնագավառում. սահմանում ե իսկական զինվորական ծառայության կանչվելու յենթակա քաղաքացիների յուրաքանչյուր տարվա կոնտինգենտները. ղեկավարում ե յերկրի զինված ուժերի ընդհանուր շինարարությունը: Կառավարման ու տնտեսության այն ճյուղերում, որոնք վերապահված են ԽՍՀՄ իրավասությանը, ԽՍՀՄ Ժողկոմխորհն իրավունք ունի կասեցնել միութենական հանրապետությունների ժողկոմխորհների որոշումներն

ու կարգադրությունները: ԽՍՀՄ ժողկոմխորհին իրավունք է վերապահվում չեղյալ հայտարարելու ԽՍՀՄ ժողովրդական կոմիսարների հրամաններն ու հրահանգները:

## ԻՆՉՊԻՍԻ՞ ՀԱՏՈՒԿ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐ ՈՒՆԵՆ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺՈՂԿՈՄԽՈՐՀՆԵՐԸ

Նրանք միավորում և ստուգում են ընդհանուր– միութենական ժողկոմատների լիազորների աշխատանքը. միջոցներ են ձեռք առնում ոչ միայն պետական, այլև տեղական բյուջեի իրականացման ուղղությամբ. ուղղություն են տալիս և ստուգում են ավտոնոմ հանրապետությունների ժողկոմխորհների աշխատանքը. ղեկավարում և ստուգում են աշխատավորների պատգամավորների բարձրագույն ու տեղական (երկրային ու մարզային, կամ թե՝ որտեղ չկան երկրամասեր ու մարզեր,— օկրուգային, շրջանային ու քաղաքային) խորհուրդների գործադիր կոմիտեների աշխատանքը. իրավունք ունեն չեղյալ հայտարարելու այդ գործադիր կոմիտեների որոշումներն ու կարգադրությունները, ինչպես նաև կասեցնելու աշխատավորների պատգամավորների երկրամասային ու մարզային կամ թե օկրուգային, շրջանային ու քաղաքային խոր-



հուրդների, ավտոնոմ հանրապետությունների ժողկոմխորհների և ավտոնոմ մարզերի աշխատավորների պատգամավորների խորհուրդների որոշումներն ու կարգադրությունները:

## ԻՆՉՊԻՍԻ՞ ԿԱԶՄՈՎ Է ՍՏԵՂԾՎՈՒՄ ԽՍՀՄ ԺՈՂԿՈՄԽՈՐՀԸ

Նա ստեղծվում է հետևյալ կազմով.— ժողկոմխորհի նախագահ, նրա երեք տեղակալներ (որոնցից մեկը Խորհրդային վերահսկողության հանձնաժողովի նախագահ), Պետպլանի նախագահ, 21 ժողովրդական կոմիսարներ, Պետական բանկի վարչության նախագահ, Արվեստի Գործերի կոմիտեի նախագահ, Բարձրագույն դպրոցի գործերի կոմիտեի նախագահ— ընդամենը 29 հոգի:

## ԻՆՉՊԻՍԻ՞ ԽՄԲԵՐԻ ՑԵՆ ԲԱԺԱՆՎՈՒՄ ԺՈՂԿՈՄԱՏՆԵՐԸ

Ժողկոմատները բաժանվում են երեք խմբի.

1. Ընդհանուր– միութենական, որ լինում են միայն ԽՍՀՄ կառավարության կազմում և որոնք պետական կառավարման իրենց հանձնարարված ճյուղը ԽՍՀՄ ամբողջ տերիտորիայում ղեկավարում են ան-

միջականորեն կամ իրենց կողմից նշանակված օրգանների միջոցով: Ընդհանուր-միութենական ժողկոմատների թվին են պատկանում հետևյալ ժողկոմատները— 1) պաշտպանության, 2) արտաքին գործերի, 3) արտաքին առևտրի, 4) հաղորդակցության ճանապարհների, 5) կապի, 6) ջրային տրանսպորտի, 7) ծանր արդյունաբերության, 8) պաշտպանության արդյունաբերության, 9) մեքենաշինության, 10) Ռազմա-Ծովային Նավատորմի և 11) մթերումների:

2. ԽՍՀՄ միութենական-հանրապետական ժողկոմատները պետական կառավարման իրենց հանձնարարված ճյուղը ղեկավարում են, որպես կանոն, միութենական հանրապետությունների նույնանուն ժողկոմատների միջոցով և անմիջականորեն կառավարում են միայն որոշ թվով ձեռնարկություններ, ըստ ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի Նախագահության կողմից հաստատված ցուցակի: Միութենական-հանրապետական ժողկոմատներ լինում են ինչպես ԽՍՀՄ-ում, այնպես և բոլոր միութենական հանրապետություններում, իսկ նրանց մի մասը՝ նաև բոլոր ավտոնոմ հանրապետություններում: Միութենական-հանրապետական ժողկոմատների թվին են



պատկանում հետևյալ ժողկոմատները. 1) սննդի արդյունաբերության, 2) թեթև արդյունաբերության, 3) անտառային արդյունաբերության, 4) հողագործության, 5) հացահատիկային ու անասնապահական խորհտնտեսությունների, 6) ֆինանսների, 7) առևտրի, 8) ներքին գործերի, 9) արդարադատության, 10) առողջապահության:

3. Հանրապետական ժողկոմատները լինում են միայն միութենական ու ավտոնոմ հանրապետություններում: Նրանք պետական կառավարման իրենց հանձնարարված ճյուղը ղեկավարում են ենթարկվելով անմիջականորեն միութենական հանրապետության ժողկոմխորհին (իսկ ավտոնոմ հանրապետություններում —և՛ ավտոնոմ հանրապետության ժողկոմխորհին— և՛ միութենական հանրապետության համապատասխան ժողկոմատին): Հանրապետական ժողկոմատների թվին են պատկանում հետևյալ ժողկոմատները.—1) լուսավորության, 2) տեղական արդյունաբերության, 3) կոմունալ տնտեսության, 4) սոցիալական ապահովության:

## ԻՆՉՊԻՍԻ՞ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒՆԵՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՈՐԳԱՆՆԵՐԸ ՅԵՎ ԺՈՂԿՈՄՆԵՐԸ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ՆՐԱՆՑ ՈՒՂՂՎԱԾ ՀԱՐՑՈՒՄՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ

*Կառավարությունը կամ ժողկոմը, վորոնց ուղղված ե Գերագույն Խորհրդի պատգամավորի հարցումը, պարտավոր են վոչ ուշ, քան յերեք որվա ընթացքում, բանավոր կամ գրավոր պատասխան տալ Գերագույն Խորհրդում (ԽՍՀՄ Գերագույն Խորհրդում— համապատասխան պալատում):*

---



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

ՈԴԻՈԶԱՅԻՆ.— *Պախարակելի, ամոթալի, ատելություն, զզվանք ներշնչող:*

ՊՐՈՏԵԿՏՈՐԱՏ.— *Տառացի կերպով նշանակում ե հովանավորություն, պաշտպանություն: Այդ բառը գործածվում ե գըլխավորապես միջազգային հարաբերությունների վերաբերմամբ: Պարզ ասած, պրոտեկտորատի մասին «պայմանագիրն» ըստ եյության հանդիսանում ե իմպերիալիստական տիրապետության եքսպանսիայի (ընդարձակման) և այս կամ այն յերկիրն իմպերիալիստական խոշոր գիշատիչների գաղութը դարձնելու յեղանակներից մեկը: Այսպես օրինակ, աֆրիկյան ու ասիական շատ յերկրներ, վորոնք Անգլիայի հետ կապված են պրոտեկտորատի «պայմանագրերով»,*

հանդիսանում են Անգլիայի ամենախակական գաղութները (Ուգանդան, Զանզիբարը՝ Աֆրիկայում, բազմաթիվ բնիկ իշխանություններ՝ Հնդկաստանի տերիտորիայում, Մալայան նահանգները՝ Ասիայում և այլն)։ «Պրոտեկտորատի» նույն այդ դրոշակի տակ, հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկի» բանդիտները ձգտում էին կապիտալիստական և, մասնավորապես, ֆաշիստական պետությունների գաղութը դարձնել Խորհրդային Միության մի շարք հանրապետությունները։ Սրիկա Ռիկովը ստիպված եղավ խոստովանել, որ լրտեսների, դիվերսանտների ու մարդասպանների «աջ-տրոցկիստական բլոկը» մտադիր էր Բելոռուսիան հանձնել Լեհաստանի «պրոտեկտորատի» ներքո։ Վնասարար ու դիվերսանտ Խոջաևը խոստովանեց, որ նա և իր կամակատարները պատրաստվում էին Անգլիայի «պրոտեկտորատը» հաստատել Ուզբեկական ՍՍՀ-ի նկատմամբ, այսինքն Ուզբեկստանը վաճառել անգլիական կապիտալիստներին, այդ ծաղկող Խորհրդային հանրապետությունը դարձնելով անգլիական գաղութ։

ՌԵԷՄԻԳՐԱՆՏ — Էմիգրանտ (վտարանդի), որը մշտական բնակության է մեկնել ար-



տասահման, իսկ այնուհետև նորից վերադարձել է այն երկիրը, որտեղից նա առաջ էմիգրացիա էր կատարել։ Հակախորհրդային «աջ-տրոցկիստական բլոկի» դատավարության ժամանակ Ռիկովը հիշատակեց առանձին ռեէմիգրանտների մասին, որոնք արտասահմանից վերադառնալով ՍՍՀՄ և կապված լինելով ֆաշիստական հետախուզությունների հետ, մտել էին Բուխարինի կամակատար Սլեպկովի նախաձեռնությամբ կազմակերպված ընդհատակյա աշխատավոր-գյուղական կուլակային միության կազմի մեջ։ Այդպիսի ռեէմիգրանտների միջոցով այդ միությունը կապ էր պահպանում արտասահմանում էմիգրացիայի (վտարանդիության) մեջ գտնվող կուլակային աշխատավոր-գյուղականության մնացորդների հետ։

ՌԽՖՍՀ ՔՐԵԱԿԱՆ ՕՐԵՆՍԳՐՔԻ 58-ՐԴ ՀՈԴՎԱԾԸ — Նախատեսում է պատժի ամենախիստ, ընդհուպ մինչև բարձրագույն չափը՝ հակահեղափոխական հանցագործությունների համար, այսինքն այնպիսի հանցագործությունների, որոնց նպատակն է տապալել, քայքայել կամ թուլացնել խորհրդային իշխանությունը, խորհրդային պետությունը։ Նայած իրենց բնույթին և

ի կատար ածվելու մեթոդներին, հակահեղափոխական հանցագործությունները յենթակա յեն լինում ՌՍՖՍՀ Քրեական Որենսգրքի 58-րդ հոդվածի զանազան յենթահոդվածների (բաժինների) գործողությանը։

ՌՍՖՍՀ Քրեական Որենսգրքի 58-րդ հոդվածը լիովին համապատասխանում ե Ստալինյան Սահմանադրության 133-րդ հոդվածին, վորի մեջ ասված ե, վոր՝ «Հայրենիքի պաշտպանությունը ԽՍՀՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն ե։ Հայրենիքին դավաճանելը— յերդումը խախտելը, թշնամու կողմն անցնելը, պետության ռազմական հզորությանը վնաս հասցնելը, լրտեսությունը—պատժվում են որենքի ամբողջ խստությամբ, վորպես ամենածանր չարագործություն»։

ՌՍՖՍՀ Քրեական Որենսգրքի 58-1 ա հոդվածի համաձայն պատժի բարձրագույն չափով պատժվում ե «Հայրենիքին դավաճանելը, այսինքն այնպիսի գործողությունները, վորոնք ԽՍՀ Միության քաղաքացիների կողմից կատարվում են ի վնաս ԽՍՀ Միության ռազմական հզորության, նրա պետական անկախության կամ նրա տերիտորիայի անձեռնմխելիության, ինչպես որինակ, լրտեսությունը, ռազմական



կամ պետական գաղտնիքը հայտնելը, թշնամու կողմն անցնելը» և այլն։

Դեռի խորհրդային ժողովուրդը վայրագ ատելությամբ չի, այդ ժողովրդի կամքով յերկրի յերեսից ջնջված տրոցկիստական-բուխարինական դավաճանները վաճառվել եյին խորհրդային պետության ամենավոխերիմ թշնամուն— Փաշիզմին, մի շարք տարիների ընթացքում նրանք կատարում եյին լրտեսական աշխատանք հոգուտ ճապոնական, գերմանական, լեհական ու անգլիական հետախուզությունների։ Յեթե այդ ստոր դավաճանները նույնիսկ կատարած էլ չլինեյին իրենց մյուս կուշմարային հանցագործությունները, ապա հենց միայն այդ հանցագործության համար նրանք խորհրդային որենքի համաձայն արժանի եյին գնդակահարության։

ՌՍՖՍՀ Քրեական Որենսգրքի 58-2 հոդվածը պատժի բարձրագույն չափ ե նախատեսում «զինված ապստամբության կամ հակահեղափոխական նպատակներով զինված բանդաների՝ խորհրդային տերիտորիան ներխուժելու, կենտրոնում կամ տեղերում իշխանությունը նույն այդ նպատակներով և, մասնավորապես, ԽՍՀ Միությունից ու առանձին միութենական հանրապետու-

թյունից նրա տերիտորիայի վորևէ մասը բանի կերպով անջատելու կամ տարբերկրյա պետությունների հետ ԽՍՀ Միության կնքած պայմանագրերը խզելու նպատակով գրավելու» համար։

«Աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցները՝ 1) փորձում էյին կուլակային ապստամբություններ կազմակերպել Սիբիրում, Հյուսիսային Կովկասում, Միջին Ասիայում և այլն, նպատակ ունենալով տապալել խորհրդային իշխանությունը և վերականգնել կապիտալիզմը, 2) պատերազմի դեպքում պատրաստվում էյին ճակատը բաց անել ֆաշիստական ինտերվենտների առաջ, 3) կազմում էյին Պրիմորյեն, Ուկրաինան և Միջինասիական ու Անդրկովկասյան միութենական հանրապետությունները ԽՍՀՄ-ից անջատելու պլաններ, 4) հօգուտ գերմանական ֆաշիզմի շահերի պրովոկացիոն աշխատանք էյին կատարում ագրեսորի հանդեպ փոխադարձ ոգնության Ֆրանս-խորհրդային պայմանագիրը խզելու ուղղությամբ։ Այդ հանցագործությունների համար հայրենիքը վաճառողներն ու մատնիչներն արժանի էյին մահվան։

ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58-7 հոդվածը պատժի բարձրագույն չափով պատ-



ժում է «պետական արդյունաբերությունը, տրանսպորտը, առևտուրը, դրամական շրջանառությունը կամ վարկային սիստեմը, ինչպես նաև կոոպերացիան քայքայելու համար, վորը կատարվել է հակահեղափոխական նպատակներով՝ պետական հիմնարկներն ու ձեռնարկությունները համապատասխանորեն ոգտագործելու կամ նրանց նորմալ գործունեյությանը հակազդելու միջոցով...»։

Վնասարարները կատարել էյին անհամար հանցագործություններ, վորոնք նախատեսված են ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի այդ հոդվածով։ Գրինկոն ձգտելով «Խորհրդային կառավարությանը հարվածել ռուբլով», քայքայում էր Խորհրդային յերկրի ֆինանսական տնտեսությունը, Զելենսկին վնասարար կերպով վիժեցնում էր կոոպերացիայի աշխատանքը, Ռոզենհոլցը վնասարարություն էր կատարում արտաքին առևտրի բնագավառում, վորը խորհրդային իշխանության տնտեսական հրամանատարական բարձունքներից մեկն է, Զերնովը և Շարանգովիչը թունավորում էյին անասուններին, բուրժուական նացիոնալիստներ Իկրամովը և Խոջայեվը վնասարարություն էյին կատա-

րում բամբասկագործության ու չհրամայահության ասպարեզում և այլն: Այդ բոլոր տականքները լիովին արժանի եյին խորհրդային դատարանի խիստ, բայց արդար դատավճռին:

ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58-8 հոդվածը պատժի բարձրագույն չափ— գնդակահարություն է նախատեսում «խորհրդային իշխանության ներկայացուցիչների կամ բանվորական ու գյուղացիական հեղափոխական կազմակերպությունների գործիչների դեմ ուղղված տեռորիստական ակտեր ի կատար ածելու և այդպիսի ակտերի կատարմանը մասնակցելու» համար:

Աջ-տրոցկիստական վոճրագործները կատարել եյին մի ամբողջ շարք ամենահրեշավոր տեռորիստական ակտեր: Նրանց ամբողջ սև արյամբ չի կարող հատուցվել մեծ Լենինի արյունը, վոր թափվեց 1918 թվի օգոստոսի 30-ին եսերուհի— տեռորիստ Կապլանի կրակոցից, վորի հանցավոր ձեռքն ուղղել եր Տրոցկու ամենամերձավոր կամակատար Բուխարինը: Նրանց ամբողջ սև արյամբ չի կարող հատուցվել հեղափոխության բոցաշունչ տրիբունի, անմոռաց Սերգեյ Միրոնովիչ Կիրովի արյունը, Կիրովի՝ վորը



սպանվեց աջ-տրոցկիստական վոճրագործների հրամանով: Ցաշխատ ճիվաղները մեռցրին Վ. Ռ. Մենժինսկուն, Վ. Վ. Կույբիշեվին և ռուս մեծագույն, հանճարեղ գրող Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկուն: Նրանք նշան եյին բռնել խորհրդային ժողովրդի բուն սրտին, ծրագրելով ընկեր Ստալինի սպանությունը: Նրանք պատրաստում եյին ընկ. ընկ. Մոլոտովի, Կագանովիչի, Վորոշիլովի սպանությունը: Հենց միայն այդ հանցագործությունների համար նրանք պետք է կրեյին պատժի բարձրագույն չափը:

ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58-9 հոդվածը պատժի բարձրագույն չափն է սահմանում «հակահեղափոխական նպատակով, պայթեցման, հրկիզման կամ այլ յեղանակներով, հաղորդակցության յերկաթուղային կամ այլ ճանապարհներն ու միջոցները քանդելու կամ վնասելու» համար: «Աջ-տրոցկիստական բլոկի» մասնակիցները ճապոնական հետախուզության ցուցումներով դիվերսիաներ եյին կազմակերպել յերկաթուղիներում, զինվորական գնացքների խորտակումներ եյին կազմակերպել Հեռավոր- Արևելքում:

Հակահեղափոխական «աջ-տրոցկիստա-

կան բլոկի» առեղծումը հենց, որը միավորում էր տրոցկիստների, աջերի, զինովևականների, մենշևիկների, եսերների և բուրժուական նացիոնալիստների ընդհատակյա հակահեղափոխական խմբերը, ուղղակի կերպով նախատեսված է ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58–11 հոդվածով, որը պատժի բարձրագույն չափ է սահմանում ամեն տեսակ կազմակերպչական գործունեության համար, որն ուղղված է հակահեղափոխական հանցագործություններ նախապատրաստելու կամ կատարելու նպատակին:

Մեղադրյալներից յերեքը— Իվանովը, Զելենսկին, Զուբարյովը— մերկացվեցին նաև որպես ցարական պահնորդական բաժնի գաղտնի գործակալներ, ընդհատակյա հեղափոխական բանվորական շարժումը մատնողներ: Այդ լիովին ապացուցվեց հետաքննության ու դատաքննության նյութերով և արխիվների սեփական խոստովանությամբ: Ուստի, նրանց դեմ մեղադրանք էր հարուցված նաև ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի 58–13 հոդվածով, որն ասում է, որ «ակտիվ գործողությունները կամ ակտիվ պայքարը բանվոր դասակարգի և հեղափոխական շարժման դեմ, որոնք արտահայտ-



վել են ցարական կարգերի օրոք պատասխանատու կամ գաղտնի (գործակալության) պաշտոններում», յենթակա յեն պատժի բարձրագույն չափին:

Ղեկավարվելով ՌՍՖՍՀ Քրեական Օրենսգրքի վերոհիշյալ հոդվածներով, սոցիալիզմի յերկրի Հիմնական Օրենքին—ԽՍՀՄ Սահմանադրությանը լիովին համապատասխան, ԽՍՀՄ Գերագույն դատարանի Զինվորական կոլեգիան 1938 թվի մարտի 13-ին հայտարարեց իր արդար դատավճիռը հակախորհրդային հակահեղափոխական «աջ-տրոցկիստական բլոկի» գործի վերաբերմամբ: Դատավճիռը և այն ի կատար ածելը ջերմ հավանության արժանացավ ամբողջ խորհրդային ժողովրդի և աշխարհի բոլոր ազնիվ մարդկանց կողմից: Այդ դատավճիռը համապատասխանում է ամբողջ մարդկության շահերին:

ԵՔՍՊՈԶԻՏՈՒՐԱ.— Ներկայացուցչություն, բաժանմունք: Այդ բառով կարճ անվանվում են լեհական գլխավոր շտաբի հետախուզական վարչության բաժանմունքները, այսինքն նրա լրտեսական օրգանները: Ռիկովը—աջ-տրոցկիստական շայկայի պարագլուխներից մեկը— խոստովանեց, որ Բելո- աջերի կազմակերպությունը

ռուսիայում՝ հանդիսանում էր լեհական գլխավոր շտաբի էքսպոզիտուրան: Նույն այդ Ռիկովի ասելով, աջերի կազմակերպու-թյունն Ուկրաինայում՝ գերմանո-լեհական ֆաշիզմի էքսպոզիտուրան, բաժանմունքն էր:



ՀՍՍՀ. ԿԳԿ. հրատարակչություն—«Խորհրդ. Հայաստան»

БАЦВАЦ

ԲԱՑՎԱԾ Է 1938 Թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ
Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուսպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . 3 »
3 » . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝
«Սոյուզպեչատ»-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին։